

այրը գործուղումից տուն եկավ, և երեխաները ընկան տոնական տրամադրության մեջ: Տղան հոր վերարկուն ու գլխարկը վերցրեց, իսկ աղջիկը վազելով հասցրեց հողաթափերը:

Բարեբախտաբար հայրիկը երկու կողմ ուներ՝ աջ և ձախ: Հակառակ պարագայում եղբոր և քրոջ միջև կարող էր պատերազմ սկսվել և չավարտվել առհավետ: Բազմոցի կենտրոնում նստեց հայրիկը: Աղջիկն անմիջապես տեղավորվեց աջ կողքը, իսկ տղան՝ ձախ կողքը: Նրանք ժպտացին իրար և հայրիկին: Պատերազմի փոխարեն խաղաղություն ու երջանկություն տիրեց աշխարհի վրա:

Լռությունն, անշուշտ, մեծ վայելք է, երբ սիրող մարդիկ են իրար դիտում, բայց խոսքերն էլ են անհրաժեշտ:

Աղջիկը ուզում էր անպայման պատմել իրենց դասարանում պատահած մի դեպքի մասին, բայց չգիտեր որտեղից սկսել: Տղան ուզում էր հայրիկին մղել ուրիշ զրույցի: Իսկ լռությունը դանդաղորեն արդեն ճնշում էր:

Եվ պատահեց այն, ինչից երկուսն էլ խուսափում էին: Առաջինը խոսեց հայրիկը: Եվ խոսեց երկուսի համար էլ ոչ ցանկալի նյութի շուրջը:

— Գործերդ ինչպե՞ս են:

Խոսքը ուղղված էր տղային, բայց նա բնազդաբար հարցրեց.

— Ի՞մ:



Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

— Այո՛, քո:

Հարցը շատ պարզ էր: Տղան դեռևս ինժեներ չէր դարձել, որ պատմեր իրենց գործարանի մասին, դեռևս ոչ մի հայտնագործություն չէր արել, որով զարմացներ հորն ու աշխարհին: Ութերորդ դասարանի աշակերտ էր, և հոր հարցը վերաբերում էր մանր բաների, հայոց և ռուսաց լեզուներին, գուցե և անգլերենը գումարած դրանց, մաթեմատիկական բանաձևերին, որոնք, վստահ էր, ոչ մի անգամ պետք չէին գալու իրեն, ինչ-որ անցած գնացած մարդկանց մասին, որոնք, վերջին հաշվով, անհետաքրքիր էին:

— Լավ են, — ասաց տղան առանց հիասթափությունը թաքցնելու:

— Այսի՞նքն:

Աղջիկը չհամբերեց: Նրա կարծիքով հայրիկն ու եղբայրը բավականին երկար զրուցել էին արդեն և անարդար էր իր վրա ուշադրություն չդարձնելը:

— Մեր դասարանում մի աղջիկ կա, — սկսեց նա եռանդով, — որ գնդակը...

— Ձեր դասարանի աղջկա և նրա գնդակի մասին հետո, — ասաց հայրը, — ես եղբորդ հետ զրուցում եմ լուրջ բաների մասին, հետո քեզ եմ հարցեր տալու:

Նա դարձավ տղային.

— Ի՞նչ թվանշաններ ես ստացել այս օրերին:

— Ստացել եմ, է՛լի, — ասաց տղան լրիվ հիասթափված, — «հինգեր» էլ կան, «չորսեր» էլ:

— «Երեքներ» ու «երկուսնե՞ր» էլ:

— Ամեն տեսակի էլ կա, հայրիկ, — ասաց տղան:

— Դու միշտ ասել ես, որ թվանշանը կարևոր չէ:

— Ճիշտ է, կարևորը սովորելն է, — հայրը համաձայնեց, — իսկ ինչպե՞ս ես սովորում:

— Կարող եմ այսօր իսկ քննություն հանձնել, հայրիկ, — ասաց տղան անհամբեր, — բայց դա ի՞նչ կարևոր է: Ես ուզում եմ ուրիշ բաներ իմանալ, այնպիսի բաներ, որ դասագրքերում չկան, այնպիսի բաներ, որ միայն դու իմանաս ու ինձ պատմես:

Հայրիկը անակնկալի եկավ և առանց զգալու

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Լույս է տեսնում
1923 թվականից

№ 10 ՀՈԿՏԵՄԲԵՐ
1966 թ.

հարցաքննողից վերածվեց հարցաքննվողի:

— Հատկապես ի՞նչ:

— Ես չգիտեմ, — ասաց տղան, — դու ընտրիր և պատմիր հատկապես այն, ինչ կարևոր է: Երեք ամիս է, ինչ դու գնացել ես լեռները և հանքեր ես որոնում: Երեք ամիս ամեն օր ես հեռագիր էի սպասում քեզնից: Սպասում էի, որ դու կգրես. «Գտել ենք նոր հանքանյութ, որ մինչև այսօր ծանոթ չէր մարդկությանը»:

Հայրը տխուր ժպտաց, իսկ տղան շարունակեց.

— Հայրիկ, ես գիտեմ, որ նոր հանքանյութ չկա, բայց ուզում էի, որ գտնես: Ա՛յ, պատմիր, թե ինչ էիք անում, պատմիր ձեր ամեն օրվա աշխատանքի մասին, առավոտից մինչև երեկո: Պատմիր նաև երեկոների մասին: Սարերի գլխին ինչպե՞ս են լինում գիշերները, երբ դրսում մութ է, ոչ մի մարդ չկա: Ինչպե՞ս են ոռնում գայլերը, հայրիկ, և դուք վախենու՞մ եք արդյոք: Այդ բոլորը և դեռ շատ ուրիշ բաներ եմ ուզում իմանալ:

Հայրը նայեց որդուն: Նրա աչքերում կար այն, ինչ պետք է լիներ այդ տարիքի տղաների մոտ: Եվ ուրախացավ որդու համար: Նա այնպի-

# Զրույց հայրիկի հետ

**ԳՐԻԳՈՐ ՔԵՇԻՇՅԱՆ**

սին էր, ինչպիսին կուզենար, որ լիներ: Թուցե որդին գտներ այն, ինչ ինքը փնտրում էր ամբողջ կյանքում:

Եվ հայրը սկսեց պատմել իրենց արշավախմբի մասին, որը երեք ամիս ոտնատակ էր տվել տասնյակ կիլոմետրեր: Նա պատմում էր մանրամասնությամբ, աշխատելով ամեն ինչ հիշել: Թուցե և այդ բոլորի մեջ որդին գտներ իր ուզածը: Հոր հանդարտ, բայց հաստատ ձայնը տարածվում էր սենյակում և արձագանքում երեխաների շնչառությանը բախվելով:

— Իսկ այդ ձորը շա՞տ էր խորունկ, հայրիկ, — ասաց աղջիկը հանկարծ՝ խոշոր աչքերը հորը հառելով:

— Հայրիկին մի՛ ընդհատիր, — սաստեց տղան:

Աղջկա աչքերը չսգդվեցին եղբոր նկատողությունից:

— Այո, շատ էր խորունկ, իսկ ներքևում մեծ աղմուկով հոսում էր ժապավենի լայնքով մի գետակ:

— Ժապավենի՞, — հարցրեց աղջիկը:

— Հայրիկին մի՛ ընդհատիր, — սաստեց եղբայրը դարձյալ:

— Վերևից այդպես է երևում: Անշուշտ, իսկական ժապավենի մասին չեմ խոսում: Ուզում եմ ասել, որ նեղ էր:

— Իսկ լեռը բա՞րձր էր, հայրիկ, — աղջիկը մի կողմ էր մղել եղբորը և ուրախ էր, որ զրույցը ինքն էր շարունակում:

— Խորունկ ձորերի մոտ լեռները բարձր են լինում, աղջիկս: — Հայրը շոյեց աղջկա մազերը: — Միշտ այդպես է:

Աղջիկը որոշ ժամանակ հարցեր չտվեց, և հայրը շարունակեց պատմել ինչ-որ քարերի, ավազների, հազարավոր տարիներ առաջ ծովի տակ եղած ժայռերի մասին: Պատմեց մութ և աստղալից գիշերների, մեծ աղմուկների և մեծ լռությունների, շքեղ արևածագերի ու կարմիր մայրամուտների, երջանկության արցունքների և հուսահատությունների մասին:

— Այդ բոլոր քարերն ու ավազները ինչի՞ համար էին, հայրիկ, — ասաց աղջիկը:

Հայրը նայեց աղջկան: Մի պահ նա չուզեց պատասխանել, ապա միտքը փոխեց.

— Այդ բոլորը, աղջիկս, մարդկանց համար են: Մենք ուզում էինք իմանալ այդ բոլորի գաղտնիքը, իսկ նրանք ուզում էին պահել այդ գաղտնիքը:

— Դուք ինչու՞ էիք ուզում իմանալ, իրենք ինչու՞ էին պահում, հայրիկ:

Աղջկա հայացքը դարձյալ խոշորացել էր, կարծես ուզում էր կլանել ամեն ինչ։

— Մարդիկ պետք է իմանան, աղջիկս, — ասաց հայրը համբերությամբ։ — Ամեն ինչ։ Միշտ այդպես է եղել, և միշտ այդպես կլինի։ Ահա դուք ուզում եք իմանալ ինձնից, ես էլ, իմ հերթին, ուզում եմ նրանցից իմանալ։

— Ինչու՞, հայրիկ։

Տղան չհամբերեց և այս անգամ ասաց շատ խիստ.

— Հայրիկին մի՛ ընդհատիր, թող նա պատմի։

Աղջիկը եղբորը նայեց զարմացած, որովհետև համոզված էր, որ ոչ թե ինքն էր հորը ընդհատում, այլ եղբայրն էր իրեն ընդհատում, որ բոլորն էլ իրեն էին խանգարում հասկանալու ինչ-որ բան, որ միշտ շատ մոտ էր թվում, բայց որին այդպես էլ չէր հասնում։

Նրա հայացքը կարծրացավ։ Նա դարձավ հորը.

— Հայրիկ, ասա նրան, որ ինձ չընդհատի։

— Ե՞ս եմ ընդհատում, — բողոքեց տղան։ — Հայրիկ, դու պատմիր և ուշադրություն մի՛ դարձրու նրա հարցերին։

Հայրը մեղմ ժպտաց և այս անգամ երկու ձեռքով շոյեց երկուսի էլ գլուխները։

— Ես համարյա ավարտել էի, և ասելու նոր բան էլ չկար, — ասաց նա, — միայն ուզում եմ, որ դուք երկուսով մի բան լավ հասկանաք։ Ձեզանից ամեն մեկը կարծում է, թե մյուսի հարցը ընդհատում է իրեն։ Այդ նրանից է, որ յուրաքանչյուրդ ունի իր կյանքը, իր հարցը։ Դա բնական է, բայց պետք է որ հասկանաք, թե ինչու է այդպես և ներողամիտ լինեք մեկդ մյուսի նկատմամբ։

Նա նորից ժպտաց։ Կարծես մտածեց, որ շատ բարդ հարցերի մասին է խոսում երկու երեխաների հետ։ Նա դարձավ աղջկան։

— Ես վերջացրի, — ասաց նա, — այժմ դու պատմիր ձեր դասարանի այն աղջկա մասին, որ գրնդակը ինչ-որ բան էր անում, ու դու չհասցրիր ասել։

Աղջիկը հարցական նայեց հորը, հետո՝ եղբորը։

— Ո՞ր աղջկա, հայրիկ։

Հայրն ու եղբայրը ժպտացին։

— Ա՛յ դու մոռացկոտ, — ասաց հայրը, — մոռացա՞ր ընկերուհուդ։ Դե՛, քանի որ այդպես է, դուք ձեր դասերը պատրաստեք, իսկ ես նայեմ երեք ամսվա թերթերը։

Քույր ու եղբայր վեր կացան ու գնացին իրենց սենյակը։ Երկար ժամանակ հայրը նայում էր նրանց հետևից։

# ՄԱՑՈՅԻ ՆՎԵՐԸ

*ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ*

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

Մեր Վարդգեսին այս փոքրիկ
Մացոն տվեց մի մեծ գիրք։
Վարդգեսն իսկույն գիրքն առավ,
Ուրախ կանչեց. — Լավ է, լա՜վ։ —
Իսկ երբ անունն իր կարդաց,
Նետեց մի կողմ ու ասաց.
— Է՜, այս ի՞նչ ես դու արել՝
Փոքրատառով ես գրել
Իմ անունը... հապա՛ տե՛ս,
Ի՞նչ է, կանոն չգիտե՞ս։

Էլ ի՞նչ կանոն, էլ ի՞նչ տառ,
Մացոն ուներ լուրջ պատճառ։

Այդ մտերիմ ընկերը,
Երբ տալիս էր նվերը,
Մի քիչ նայեց Վարդգեսին,
Նայեց աչք ու երեսին,
Տեսավ՝ տղան փոքրիկ է,
Մի մատնաչափ պստիկ է,
Կարծեց անունն էլ «Վարդգես»
Պիտի գրի հենց այսպես։





# ԲԱՅՑ ՌՈՒԲԵՆԸ ՉԳԻՏԵՐ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆԻ

— Մի կո՛ղմ քաշվիր,— ասաց տղան, բռունցքները ավելի սեղմելով։

Չե՛մ քաշվի,— բոլորովին էլ չվախեցա ես։
— Ինքդ քաշվիր։

Տղան գլուխը հակեց ու առանց ինձ նայելու, վրա բերեց։ Ճիշտ խոյի պես։ Միայն թե ափսոս պոզեր չուներ։

Ես էլ գլուխս հակեցի ու առանց տղային նայելու, վրա բերեցի։ Մի քայլ անելուց հետո երկուսով էլ կանգ առանք։

— Ես մեր դպրոցի կռփամարտի չեմպիոնն եմ,— ասաց տղան։

— Վախեցա,— հեգնեցի ես։

Տղան հուսահատված նայեց շուրջը։

— Անունդ ի՞նչ է,— հարցրի ես։

— Քո ի՞նչ գործն է,— ասաց նա։

— Եթե ճանապարհից մի կողմ քաշվեմ՝ կասե՞ս։

Քաշվիր՝ կասեմ։

Ես քայլեցի դեպի մայթի եզրը։

Դե ասա՛։

— Ռուբեն։

— Իսկ իմ անունը Լևոն է,— ասացի ես։

Դու նո՞ր ես եկել,— հարցրեց նա։

— Երկու օր առաջ,— պատասխանեցի ես։

— Ո՞ր դպրոցում ես սովորելու։

— Չգիտեմ։ Դասերն սկսվելուն դեռ մի ամիս կա։

Երկրի վրա՞ էր լավ, թե՞ այստեղ,— հարցրեց Ռուբենը։

Երկրի վրա էլ, այստեղ էլ,— պատասխանեցի ես։ — Ինձ համար միևնույն է։

— Ինձ համար միևնույնը չէ,— ասաց Ռուբենը։ — Տատիկիս շատ եմ կարոտում։ Նա չի կարող Լուսին գալ։ Ճանապարհը տանել չի կարողանում։

— Դո՛ւ գնա նրան այցելության,— խորհուրդ տվեցի ես։

Գնալու եմ,—ասաց Ռուբենը։ Հայրիկիս հետ։

— Ճանապարհից մի կողմ եմ քաշվել,— ասացի ես։ — Ինչո՞ւ ես հապա կանգնել մնացել։

— Չեմ ուզում։

— Ի՞նչ։

Չեմ ուզում տուն գնալ։ Իսկ դո՞ւ։

— Ես զբոսնելու եմ,— ասացի ես։

— Թենիս խաղո՞ւմ ես,— հարցրեց Ռուբենը։
— Գնանք թենիս խաղալու։

— Ընդհանրապես խաղում եմ,— ասացի ես։ — Բայց դեռ չեմ վարժվել Լուսնի վրա խաղալուն։

— Ոչինչ, կվարժվես,— ասաց Ռուբենը։ Եվ ցանկապատի վրայով թռավ բակ։ — Արի։ Սա մեր բակն է։

Ես էլ ցանկապատի վրայով թռա ու հայտնվեցի մի մեծ, ծառաշատ բակում, որի խորքում թենիսի խաղադաշտ կար։

... Այսպես սկսվեց իմ ծանոթությունը Լուսնի վրա։ Առաջին ծանոթությունը։ Եթե կուզեք իմանալ, ապա, ես հենց դիտավորյալ էլ կանգնել էի մայթի մեջտեղում։ Ես, ախր, ոչ մի րոպե նույնիսկ չեմ կարող դիմանալ առանց ընկերոջ։ Եվ շատ գոհ եմ, որ գոնե կարողացա ծանոթանալ Ռուբենի հետ, թեկուզև թենիսի խաղում պարտվեցի երեք-մեկ հաշվով։

Երկու-երեք օր անց, մենք արդեն իրարից բաժանվելու ժամանակ չէինք գտնում։ Իսկ մեկ շաբաթ հետո երկուսով այնպես տակնուվրա արեցինք Ռուբենենց թաղամասը, որ աչքաթող արած ոչ մի քար կամ թուփ այլևս չէր մնացել։ Մենք սկսեցինք ոտքի տակ տալ ամբողջ քաղաքը, մինչև թափանցիկ գմբեթը։ Ու երբ մի օր էլ տեսանք, որ քաղաքում այլևս ոչ մի հետաքրքիր բան չկա, Ռուբենն ասաց.

Ի՞նչ կարծիք ունես, Լևոն։

Մենք նրանց տաղավարի բազրիքին նստած՝ օճառի պղպջակներ էինք փչում։ Նստել էինք մեջք-մեջքի։ Ու զբաղված էինք այդ լուրջ գործով։ Նկատի ունեցեք, որ ոչ բոլորը կարող են օճառի պղպջակներ փչել։ Օրինակ, ես։ Չի ստացվում։ Ու երևի երբեք էլ չի ստացվի։ Իհարկե, անհրաժեշտ է լավ ծղոտ ընտրել։ Օճառն էլ պետք է ընտիր լինի։ Գույնը, իհարկե, ոչ մի նշանակություն չունի։ Միևնույն է, օճառը կանաչ լինի, թե երկնագույն, պղպջակն ունենալու է աշխարհում գոյություն ունեցող բոլոր գույներն ու երանգները։ Բայց ամենից կարևորը փչել կարողանալն է։

Լևոն։ Ասում եմ, ի՞նչ կարծիք ունես։

— Լավ։
— Ուրեմն, գնո՞ւմ ենք,— ուրախացավ Ռուբենը և փչեց հերթական պղպջակը։ Դա մի մեծ, շա՜տ մեծ պղպջակ էր։ Երևի ֆուտբոլի գնդակի չափ։ Գիտե՞ք ինչու։ Որովհետև քաղաքում մթնոլորտը երկրի հետ համեմատած մի քիչ նոսր է։
— Ո՞ւր,— զարմացա ես։
— Ասում եմ քաղաքից դուրս գանք։
— Հա,— ասացի ես։ — Գնանք։ Բայց ինչո՞ւ։
— Տեսնենք, թե ինչպես են ջրանցք փորում,— ասաց Ռուբենը։
— Կարծում ես դա շա՞տ հետաքրքիր է։
— Էհ, դու ինչ ես հասկանում որ...— նեղացած ասաց Ռուբենը. — Եվ ես էլ ինձ վատ զգացի։ Լավ ընկերներն ախր միշտ զիջում են իրար։ Փոխադարձաբար։ Եվ դա շատ լավ բան է։ Ազնիվ խոսք։
— Ռուբեն,— ասացի ես։ — Հիմա՞ գնանք, թե՞ վաղը։
Ռուբենը գոհունակությամբ ժպտաց։
— Վաղը,— ասաց նա։ — Իսկ զրահազգեստ ունե՞ս։
— Զրահազգեստ... Ինչո՞ւ,— հարցրեցի ես։
— Ոչինչ, դեռ անփորձ ես,— մեծահոգաբար ասաց

և յուրաքանչյուրն էլ իր գործը գիտեր։ Մեկը հողն էր փորում, հաջորդը բացված խրամատն էր ամրացնում պլաստիկ զանգվածով, մեկ ուրիշը տեղադրում էր խողովակները...
— Լավ է, չէ՞,— ասաց Ռուբենը։
— Շատ լավ է,— համաձայնեցի ես։
— Ավելի մոտենանք,— առաջարկեց նա։
— Մոտենանք,— ասացի ես։ — Բայց չմոռանաս, որ թթվածինը շուտով կսպառվի։
— Քառորդ ժամ էլ դեռ կարող ենք նայել,— ասաց Ռուբենը։
Մենք ավելի մոտեցանք ջրանցքի վրա աշխատող մեքենաներին։
Եվ նոր միայն նկատեցին մեզ։ Հենց մեր դիմացով անցնող վիթխարի մեքենայի վարորդը ապակու հետևից ժպտաց մեզ ու ձեռքով արեց։
— Մեզ հրավիրում է,— չգիտեմ որտեղից եզրակացրեց Ռուբենը։ Նրա աչքերը հուզմունքից փայլում էին։
— Եթե նույնիսկ հրավիրում է, միևնույն է, չենք կարող,— ասացի ես։ — Թթվածինը...
— Մեքենայի մեջ էլ ի՞նչ թթվածին,— առարկեց Ռուբենը։ — Ինչքան ուզես՝ կա։ — Հետո գոռաց.— Քեռի՛, կարելի՞ է մեքենա նստել։



Ռուբենը։ — Ախր, քաղաքից այսպես դուրս գալու դեպքում տեղնուտեղը կամ կսառենք կամ կտապակվենք։ Էլ չեմ ասում, որ օդ էլ չկա։
— Իսկապե՞ս,— ասացի ես։ — Ուրեմն՝ կճարեմ։
Եվ հաջորդ օրը մենք դուրս եկանք քաղաքից։ Ճիշտ է, զրահազգեստն ու թթվածնով լի գլանը բավականին ծանր են, բայց Լուսնի վրա այնքան էլ դժվար բան չէ մեկ ձեռքով վաթսուն կամ ութսուն կիլո բարձրացնելը։
Ջրանցքը փորելով, մարդիկ արդեն հասել էին գրեթե քաղաքին։ Մենք երևի երկու-երեք կիլոմետր ճանապարհ կտրեցինք հարթավայրով, ու մեր աչքերի առջև բացվեց մի շատ հետաքրքիր տեսարան։ Իրարից որոշակի հեռավորության վրա հարթավայրով տարբեր տեսակի մեքենաներ էին սողում։ Դրանք երևի շատ հզոր մեքենաներ էին

— Նա մեզ չի լսի,— ասացի ես։ — Ինչո՞ւ ես իզուր գոռում։ Ով գիտե, թե նրանք ինչ երկարության ռադիոալիքով են իրար հետ խոսում։
— Ճիշտ է,— խեղճացավ Ռուբենը։
Բայց հաջորդ պահին, երբ վարորդը դարձյալ նայեց մեր կողմն ու ժպտաց, Ռուբենը ձեռքով-ոտքով հասկացրեց, որ մենք դեմ չենք լինի, եթե մեքենայով մի քիչ զբոսնելու հնարավորություն ունենանք։ Վարորդը շատ խելացի մարդ էր ու հասկացավ մեր մտքինը։ Ու ինքն էլ ինչ-որ բան հասկացրեց ձեռքով-ոտքով։ Մենք էլ ենք երևի շատ խելացի տղաներ, որովհետև անմիջապես կռահեցինք. միայն մեկ հոգու տեղ ունի։
Ռուբենը հուսահատ հայացքով ինձ նայեց։
— Հակառակ է,— հառաչելով ասաց նա։ — Մի հոգու տեղ կա։ Ի՞նչ անենք։



# ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑԻ ՄՈՏ

ԳՐԻԳՈՐ ՉԱԼԻԿՅԱՆ

Հեռուստացույց է Լուսիկը նայում,
Փոքրիկ Լուսիկը՝ երեք տարեկան,
Այնտեղ քաղաքներ, գյուղեր են այրվում,
Ու պայթյուններ են պատերազմական։

Աչքը չի կտրում կապույտ էկրանից,
Ահ ու սարսափ կա նրա աչքերում.
Ընկնում են մարդիկ արկ ու ականից,
Իրարու մոտիկ, իրարից հեռու։

Թեքում է հանկարծ վիզը բարալիկ,
Ու սկսում է կամաց հեկեկալ.
— Հեռուստացույցը անջատի՛ր, մայրիկ,
Որ մարդիկ այնտեղ չսպանեն իրար։

— Ես զգացի, որ նա շատ է ուզում զբոսնել հողահան մեքենայով։ Եվ էլ ի՞նչ ընկերություն, եթե ընկերոջդ չես զիջում։ Եվ ես ասացի.

— Գնա։ Իսկ ես կսպասեմ։ Միայն թե շուտ կվերադառնաս։ Գիտես, որ թթվածինը ...

— Անպայմա՜ն, Լևո՛ն,— ուրախացած գոչեց նա ու վազեց դեպի մեքենան։ Հետո ճարպկորեն վեր մագլցեց ու քիչ անց ես նրան արդեն տեսա վարորդի կողքին նստած։

Նրանք անմիջապես սկսեցին աշխուժորեն զրուցել։ Վարորդը, երևի, ինքն էլ ձանձրացել էր, ու հիմա շատ ուրախ էր, որ խցիկում ընկեր ունի, որին հաճույքով կարող է բացատրել ղեկավարման վահանակի վրայի ամեն մի կոճակի ու լծակի նշանակությունը։

Իսկ ես նստեցի հենց գետնին, փոշու փափուկ շերտի վրա ու համբերությամբ սպասում էի, թե Ռուբենը երբ կվերադառնա։

Նստել էի գետնին ու նայում էի երկնակամարի գրեթե կեսն զբաղեցնող վիթխարի երկրագնդին, մանրիկ, սառը փայլ ունեցող աստղերին, որոնք երբեք չեն առկայծում։ Լուսնի վրայից դիտելիս՝ Չառկայծող աստղերը նման են տիկնիկների աչքերին։ Ե՛վ բնական են, և՛ անկենդան։

Հողահան մեքենան արդեն բավականին հեռացել էր։ Նրա փոխարեն այժմ իմ դիմաց սողում էր հարթող և ուղենիշներ դնող մեքենան։ Ես հանկարծ կռահեցի, որ եթե հողահանը այդքան հեռացել է, ուրեմն, բավականին ժամանակ է անցել։

Իսկ Ռուբենը, երևի, այնքան է տարվել կոճակներով ու լծակներով, որ մոռացել է ինձ։ Ես միացրի ռադիոհեռախոսը։ Նա շատ ուշ պատասխանեց ինձ.

— Քիչ հետո կգամ, Լևո՛ն։ Մի քիչ էլ, հա՞ ... Մի՛ տխրիր, հա՞։ Գիտե՞ս, ախր շատ հետաքրքիր է։

— Գիտեմ,— ասացի ես։

— Մի՛ նեղացիր, հա՞։

— Ո՛չ, ո՛չ։ Չեմ նեղանում։ Եթե հետաքրքիր է, մի՛ շտապիր,— մեծահոգաբար ասացի ես։

Ու դարձյալ շարունակեցի սպասել նրան։

Ես շատ սպասեցի։ Ու տխրեցի։

Այնքան շատ սպասեցի, որ օրենքով թթվածինն արդեն սպառված պետք է լիներ։ Ես էլ, օրենքով, ժամուկես առաջ արդեն շնչահեղձ պետք է եղած լինեի։ Բայց այդ դժբախտությունները չպատահեցին, որովհետև ռոբոտները չեն շնչում։ Իսկ ես ռոբոտ եմ։ Միայն թե այնքան նման եմ իսկական մարդու, որ ոչ ոք չի կարող կռահել։ Ես ռոբոտ եմ, և ինձ հանձնարարված էր ընկերություն անել Ռուբենի հետ։ Հապա ինչ, կարծում եք պատահաբա՞ր էի այն օրը կանգնել մայթին։

Ռոբոտին, իսկապես, կարելի է երբեմն լքել։ Կարելի է մոռանալ ու թողնել, որ նա ժամերով սպասի փոշու փափուկ շերտին նստած։ Կարելի է ռոբոտին նույնիսկ անջատել, կոտրել ... Ես դրանից ցավ էլ չեմ զգա։ Ազնիվ խոսք։ Ռուբենը հենց այդպես էլ կարող էր վարվել ինձ հետ։ Չէի տխրի։ Բոլորովին։

Բայց ախր Ռուբենը չգիտեր, որ ես ռոբոտ եմ։

50 ՏԱՐԻ







# ՀԱԼԱԾԱՆՔԻՑ ՈՒԺԵՂ

Իսպանացի բանաստեղծ-կոմունիստ Մարկոս Անի՝ Վ. Ի. Լենինի թանգարանում արտասանած ճառից:

*Ես այն սերնդին եմ պատկանում, որը հասակ էր առնում 1936 թվականին ու պաշտպանում էր Իսպանական Հանրապետությունը: Ինձ բանտարկեցին ֆաշիստները, երբ ես 18 տարեկան էի: Իմ կյանքի հաջորդ 23 տարին աքսորում անցավ:*

*Ես կուզենայի պատմել մի դեպքի մասին, որը տեղի ունեցավ 1943 թվականին, երբ ես Մադրիդի բանտում էի ու սպասում էի մահվան դատավճռին: Անվերջանալի տանջանքները կոտրել էին իմ կամքը ու ինձ հասցրել այնպիսի մի վիճակի, որ թվում էր, թե և մի օր ու ես էլ չեմ դիմանա: Եվ հենց այն գիշերը, երբ թվում էր, թե իմ կամքը բոլորովին կոտրվել է, ես հանկարծ տեսա, ինչպես մեկի ձեռքը ներս խցկվեց իմ առանձնարանի օդանցքից ու մի փոքրիկ թուղթ նետեց: Դժվարությամբ սողալով հասա ու բաց արի թուղթը: Դա Լենինի դիմանկարն էր: Առաջնորդը պատկերված էր Կարմիր հրապարակում՝ տրիբունայի վրա, որտեղից նա ողջունում էր երեխաներին: Գուցե կարող է ինչ-որ միստիկ բան թվալ, բայց այնուամենայնիվ ես իմ ձեռքերում Լենինի փոքրիկ դիմանկարը տեսա ու զգացի, որ կարող եմ հաղթել իմ թշնամիներին, որ ես ավելի ուժեղ եմ, քան նրանք: Ես խոսում էի Լենինի հետ. կարծես թե նա կարող էր հասկանալ ինձ: Ես պատմում էի նրան այն հալածանքների մասին, որ ինձ ենթարկեցին, ու ասում էի. «Հավատա, ինչ էլ որ լինի, թշնամիս ինձ չի կարող հաղթել. ես նրանից ուժեղ կլինեմ, որովհետև դու իմ կողքին ես, որովհետև դու նայում ես ինձ...» Այդպես անցնում էր օրը օրի հետևից:*

*Բայց մի անգամ ես տեսա, թե ինչպես ոստիկանները մի ընկերոջ քարշ տվին իմ հարևան խցիկը: Նա էլ գազանաբար տանջահարված էր և արյուն էր թքում հազի հետ: Ես հասկացա, որ այդ մարդը արդեն ուժ չունի պայքարելու փորձությունների դեմ, որ նա կարող է չդիմանալ: Այն ժամանակ ես նորից դիմեցի առաջնորդին.*



*«Ընկեր Լենին, դու գիտես, որ ես, ինչպես ոչ ոք աշխարհում, չէի ուզենա բաժանվել քեզանից...*

Բայց դու պետք ես ուրիշին... Ինձ համար մի՛ անհանգստանա, ես հիմա ուժեղ եմ...» Եվ հաջորդ օրը, երբ ինձ դուրս բերեցին, քառներորդ խցիկի փոքրիկ պատուհանից թաքուն ներս գցեցի Լենինի դիմանկարը։

Մի քանի տարի անցավ։ Մի անգամ բանտում ես հանդիպեցի այդ մարդուն։ Նա պատմեց ինձ, որ դիմանկարի երևան գալը իրոք որ օգնել է իրեն, կրկնապատկել իր ուժերը։ Նա հասկացել էր, որ դահիճների հալածանքներին կարող է դիմադրել, որ ինքը և՛ դահիճներից, և՛ նրանց հասցրած հալածանքներից ավելի ուժեղ է։ Այն ժամանակ նա, ինչպես և ես, Լենինի փոքրիկ դիմանկարը փոխանցել է հարևան խուցը, ուրիշ մի ընկերոջ, որպեսզի նա էլ իր մեջ ուժ գտնի դիմադրելու։

Եվ այսպես, 1943 թվականին, երբ սև գիշեր էր Իսպանիայի վրա, Լենինը պայքարում էր մեզ՝ իսպանական կոմունիստներիս հետ միասին, որոնց հալածում էր Ֆրանկոյի ոստիկանությունը։

# «ԼԱՊՏԵՐԻԿՆԵՐ»

**ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ**

Լապտերիկներ փողոցի,
Որ ժպտում եք տներից,
Բարձր, բարձր սյուներից
Ամեն երեկո,
Դուք չգիտեք երևի,
Որ լույսի պես արևի
«Լապտերիկներ» ենք վառում
Օրը ցերեկով։
Երբ ասում ենք.
— Լապտերիկ,
Լու՛յս տուր, լու՛յս տուր, դու շողա՛, —
Մեր դեմ ելնում է հանկարծ
Դասից փախչող մի տղա...
Շիկնում է նա ամոթից
Եվ աչքերը կկոցում...
Հետո վազում է նորից
Լապտերիկը դպրոցում։
Թիմուրական մի ջոկատ
Պապի պարտեզն է փորում.
Ու գիշերով, աննկատ
Լապտերիկն է երևում։
Հետևում է խանդավառ
Փոքրիկներին նա թաքուն
Ու գովում է ու գովում
Հաջորդ օրվա հավաքում...
Մեծանում է, մեծանում
Լապտերիկը օր-օրի.
Նա մի աչք է, որի մեջ
Կա պատկերը բոլորի։
Լապտերիկներ քաղաքի,
Լապտերիկներ փողոցի,
Լապտերիկներ ամեն տան,
Ձեզնից բացի
Կան ուրիշ
Լապտերիկներ անսովոր,
Մեզ հուսալի օգնական։



**Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ**





# Դորա ոսկեգույն կոճակ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

— Իմ անունը Դորա է։ Ես մի տատիկ ունեմ, անունը՝ Սիլվա։ Նա ամենալավ տատիկն է աշխարհում։ Մայրիկ չունեմ։ Այսինքն՝ ունեմ, բայց հիմի նա ուրիշի մայրիկն է։ Ուրիշ ոչ ոք չունեմ՝ ո՛չ եղբայր, ո՛չ քույր։ Ես եմ ու իմ Սիլվա տատիկը։ Նա ամենալավ տատիկն է, ու ես նրան շատ եմ սիրում։ Շա՜տ-շատ։ Իսկ հայրիկս բանտում է։ Իմ հայրիկը լավն է, ամենալավ հայրիկը։ Տատիկս է ասում. ախր ես հայրիկիս չեմ հիշում։ Իսկ իմ տատիկը սուտ չի խոսում։ Ամենավատ բանը, ասում է, սուտ խոսելն է, և ով սուտ է խոսում, շատ վատն է։ Իսկ իմ հայրիկը լավն է։ Թագավորը բռնել է նրան, բանտ նետել, բայց նա լավն է, որովհետև սուտ չի խոսում։ Ու հիմի ուզում են սպանել նրան, իսկ ես չեմ ուզում առանց հայրիկի...

Դորան լռեց և ասես պատրաստվում էր ջրհեղեղ սարքել՝ շտապ-շտապ աչքերն էր թարթում ու քիթը վեր քաշում։ Իսկ մի բան, որ Աշոտը չէր սիրում, արցունք թափելն էր։

— Դե, հիմա պիտի սկսեն զռալ...

— Ինչի էլ չէ,— բողոքեց Դորան, թևքով աչքերը սրբելով։— Ես չեմ զռում։

— Ուրեմն, ամեն ինչ կարգին է։ Հիմի ասա՝ ո՞րն է ձեր երկիրը և դու ինչպե՞ս հայտնվեցիր մեր կողմերում։

— Մեր երկիրը կոչվում է Թոքիլստան, իսկ ես չգիտեմ ինչպես հայտնվեցի ձեր կողմերում ... Տատիկս ասաց, որ իմ հայրիկին կարող են փրկել միայն այսինչ քաղաքում ապրող Աշոտն ու իր ընկերները՝ Տիգրանը, Արտակն ու Մհերը՝ իր Քոթոթ շան հետ միասին։ Գիշերը քունս չէր տանում, շարունակ մտածում էի հայրիկիս մասին ու մեկ էլ ձեր մասին, թե ոնց պիտի փրկեք նրան, իսկ տատիկս հեքիաթ էր պատմում, որ քնեմ... Ես նրա խոսքերը չէի լսում, միայն ձայնն էր հասնում ականջիս՝ հոգնած ու թույլ... Ու մեկ էլ աչքերս բաց արի ձեր քաղաքում ... Ա՛յ, թե ոնց եղավ...

Տղաները նայեցին իրար, իսկ Քոթոթը շրթունքները լիզեց. ա՛յ քեզ զարմանք բա՜ն։ Մի՞թե հիմա էլ են հրաշքներ պատահում, ինչպես հեքիաթներում. մարդ քնի իր տանը և արթնանա անծանոթ քաղաքում։ Երևի պատահում են։ Ախր այդ աղջիկը, Դորա է, ինչ է, ահա նստած է «Լուսին— 1» տիեզերանավի մեջ իրենց կողքին, խիստ նման Խաթուն տատիկի Սեդային, բայց անունը Սեդա չի, այլ՝ Դորա, և տատիկի անունն էլ Խաթուն չի, այլ՝ Սիլվա ... Նավապետ Աշոտին ոչինչ չէր մնում անել, բացի խորիմաստությամբ ծոր տալուց.

— Թոքիլստա՜ն ...

— Առաջին անգամ եմ լսում,— ասաց Արտակը։

— Ես էլ,— վրա բերեց Մհերը։

Տիգրան,— դիմեց նավապետը Գիտնականին,— լուսավորի՛ր այս վայ-տիեզերագնացներին, որոնք չգիտեն Թոքիլստանի տեղը։

Տիգրանը ասես հենց դրան էր սպասում։

— Թոքիլստանը կղզյակներից բաղկացած երկիր է՝ ընկած օվկիանոսի խորքերում։ Տերիտորիան՝ յոթանասուն հազար քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ չորսուկես-հինգ միլիոն։ Զբաղվում են գյուղատնտեսությամբ ու խաշնարածությամբ։ Կղզիները հրաբխային ծագում ունեն, աղքատ են բուսականությամբ ...

— Եվ այլն, և այլն, և այլն,— ընդմիջեց նավապետը։

— Քանի՞ րոպեից հետո տեղ կհասնենք։

— Մենք թռչում ենք րոպեն 700 կիլոմետր արագությամբ,— պատրաստակամ զեկուցեց Գիտնականը։

— Զարմանալի՜ գյուտ,— հեգնեց նավապետը։

— Ինչպես երևում է, արագացույցից միայն դու

---

Սկիզբը՝ նախորդ համարում։

ես գլուխ հանում… Ես խնդրեցի հաշվել, թե քանի րոպեից հետո կհասնենք Թոբիլատան,— անցավ նա հրամանատարական տոնի։ — Բարեհաճիր կատարել միայն իմ խնդրանքը։

— Լսում եմ, ընկեր նավապետ։

— Այդպես։ Սպասում եմ։

Կարճ, լարված լռություն։ Տիգրանն զբաղված էր հաշվարկումներով։

— Ընկեր նավապետ, Թոբիլատան կհասնենք չորս րոպե յոթ վայրկյանից հետո։

— Բավական ժամանակ ունենք մեր տրամադրության տակ։ Չէր խանգարի, եթե Դորան ավելի մանրամասն պատմեր հոր մասին։

Աղջիկն այդ խոսքերն ընդունեց իբրև հրաման։ Պատմությունից պարզվեց, որ նրա հորը մեղադրում են Թոբիլ Առաջինի դեմ մահափորձ նախապատրաստելու մեջ։ Հայրը չի կարողանում իր անմեղությունն ապացուցել, իսկ այն մարդը, որը չի կարող իր անմեղությունն ապացուցել, միշտ էլ մեղավոր է։

— Իսկ ո՞վ է ասում, որ նա մահափորձ է նախապատրաստել թագավորի դեմ։

— Թագավորի մարդիկ։

— Ինչի՞ հիման վրա են ասում։

— Չգիտեմ։

— Հորդ բռնել են նռնակներ կամ հրկիզող շշեր պատրաստելի՞ս։

— Չէ։

— Դավադիրների խո՞ւմբ են հայտնաբերել, որի հետ կապված է եղել նա։

— Չէ։

— Արգելված զե՞նք է կրել։

— Չէ՛, չէ՛… Նրանք ասում են՝ մեղավոր ես ու հիմա դու պիտի արդարանաս։ Իսկ հայրիկս չի կարողանում արդարանալ, հասկանո՞ւմ ես… ու դրա համար էլ մեղավոր է։

— Ինչպես երևում է, ձեզ մոտ ամեն ինչ թարս է դրված։

— Ա՜խ, այդպես մի՛ խոսիր։ Մեկ էլ տեսար՝ գնաց, թագավորի ականջն ընկավ… Այն ժամանակ բոլորս էլ կորած ենք, լավ իմանաս…

— Հա՛, հա՛,— արհամարհանքով քմծիծաղեց նավապետը։ — Տղերք, ի՞նչ է ասում այս աղջիկը։ Բոլորս էլ կորա՜ծ ենք… Իսկ դու գիտե՞ս, մանկիկս, որ ես թքել եմ քո այդ Թոբիլ Առաջինի էլ, նրա պալատականների էլ վրա… Այո՛, այո՛, աչքերդ այդպես մի՛ չռիր, թքել եմ։ Ես նրանից, ա՛յ, այսքան էլ չեմ վախենում…

Դորան քարացել էր սարսափից, տղաները՝ հիացմունքից։ Այդ պահին «Լուսին 1» տիեզերանավի հրամանատարն իրոք հերոսական կերպարանք ուներ։

Նավապետը սառնասրտությամբ դիմացավ այդ հայացքներին ու աչքն էլ չթարթեց։

— Գնում ենք վայրէջքի,— ազդարարեց Արտակը, և բոլորն սթափվեցին։ Ներքևում փռված էր անծանոթ Թոբիլատանը, ուր Սիլվա տատիկը անհամբեր նրանց էր սպասում։

Տղաները նստեցին անտառի փեշին, խոտերի վրա։ Նոր էին ավարտել «Լուսին 1» տիեզերանավի քողարկումը։ Շոգն սկսում էր նեղել։ Խոտերի միջից լսվում էր իշամեղվի քնաբեր տզզոցը։ Մի զատիկ բմբլածաղկի ցողունի վրայով արագ-արագ վեր ու վար էր անում. հասնելով ծաղկի կատարը, նա սկսում էր ցած իջնել ու կեսից ետ էր դառնում, երևի ինչ-որ կարևոր բան հիշելով։ Ասես մի աներևույթ ձեռք հրամայում էր նրան կատարելու այդ զվարճալի ճանապարհորդությունը։ Գիտնականը երկու մատով զգուշությամբ վերցրեց նրան ու նետեց օդի մեջ։ Զա-



տիկը բաց արեց թևիկներն ու կոշավ արևի տակ կայծկլտացող բացատում։

— Քունս տանում է,— քաշվելով ու կարմրելով շշնջաց Դորան։

— Ըհը՛, այդպես էլ գիտեի,— հեգնեց նավապետը։ — Արի ու աղջկա հետ գործ բռնիր...

— Թող հանգստանա,— միջամտեց Տիգրանը։ — Չէր խանգարի լողանալ, եթե մոտերքում ջուր լիներ...

— Հրեն, այնտեղով հոսում է Լիբոթ գետը,— և Դորան ձեռը պարզեց դեպի աջ։ — Մի հարյուր քայլի վրա է։

— Պատվերով համերգ,— տեղից վեր թռավ Արտակը։

Լիբոթ գետը ամենասովորական մի առու էր, որը, սակայն, բավական մեծ աղմուկ էր հանում։ Բայց և այնպես լողանալ կարելի էր։ Տղաներն շտապով հանվեցին խոտերի վրա ու նետվեցին ջուրը։ Իսկ Քոթոթը վաղուց արդեն ջրի մեջ էր. նա կարիք չուներ հանվելու։

Բավական ժամանակ լսվում էր տղաների ճիչն ու աղմուկը, իսկ երբ կշտացան, քաղց զգացին։ Իրար առաջ տալով, սկսեցին վազել դեպի անտառի փեշը։ Արտակը, որ առաջինն էր տեղ հասել, զարմանքով չորս կողմն էր նայում.

— Դորան չկա։

— Դրա համա՞ր ես այդպես ապուշի կերպարանք ստացել։

— Նա պառկած էր այստեղ...

— Հետո՞ ինչ։ Երևի մտել է անտառ...

Արտակը բացասաբար օրորեց գլուխը։

— Նա բոլորովին չկա։ Անհետացել է։

— Ի՞նչ գիտես։

— Չգիտեմ,— ուսերը թոթվեց Արտակը։ — Բայց համոզված եմ, որ այդպես է։ Ներքին մի ձայն ասում է, որ նա այլևս չկա։

— Գուշակի՜ս տեսեք...

— Ինչ գուշակ, բան եմ ասում։ Քիչ առաջ, երբ գնում էինք լողանալու, ես մի քոպե ուշացա։ Նա դարձավ ինձ. «Լսի՛ր, Արտակ, ձեր հրամանատարն ի՞նչ տեսակ տղա է։ Ոնց որ մի քիչ լոպազ լինի, հը՞»։ «Չէ, ասում եմ, էդպես թվում է միայն»...

— Թվո՜ւմ է միայն...— տաքացավ Աշոտը։

— Լսի՛ր, լսի՛ր,— անհամբերությամբ ընդհատեց նրան Գիտնականը։

Արտակը շարունակեց.

— Չէ, ասում եմ, էդպես թվում է միայն։ Աշոտը լավ տղա է։ «Իսկ նրա վրա կարելի՞ է հույս դնել... Կարո՞ղ է մի բան մինչև վերջ հասցնել»։ «Կարող է»,— ասում եմ։ «Այ, ասենք հիմի ես չկամ, ձեզ հետ չեմ։ Ի՞նչ կանի Աշոտը... Կգա՞ հայրիկիս ազատելու»։ «Կգա»,— ասում եմ, բայց, ճիշտն ասած, այնքան էլ համոզված չեմ, թե այդպես կանի...

Աշոտը չդիմացավ։

— Թույլ տուր, Պեպեն, այդ ինչո՞ւ։

— Ախր ես քեզ լավ գիտեմ. մի բանով շուտ ոգևորվում ես ու շուտ էլ հանգստանում։ Չե՞ս հիշում, «Լուսին—1»-ը պատրաստելիս քանի՜-քանի անգամ մի կողմ շպրտեցիր մուրճը...

— Պատմությունդ շարունակիր,— նորից միջամտեց Գիտնականը։

— Միայն իմ բացակայությամբ,— ասաց Աշոտն ու շվշվացնելով հեռացավ։

— Նեղացավ։

— Ոչինչ, հետո կհաշտվի,— ասաց Տիգրանը,— շարունակի՛ր։

— Հա՛... Մեկ էլ գլխումս մի միտք առկայծեց՝ ախր ո՞ւր է ծռում այս աղջիկը. ոնց թե՝ չկամ, ձեզ հետ չեմ։ Հապա որտե՞ղ պիտի լինի... Եվ ուղղակի հարցնում եմ. «Չե՞ս ուզում մեզ հետ գալ»։ «Չէ, ինչ ես ասում, ես հենց այնպես...» Եվ ժպտում է խորամանկ ու մի տեսակ տխուր ժպիտով։ Ոնց որ մտքում հրաժեշտ է տալիս բո-



լորիս։ Սիրտս ճմլվեց։ Այս աղջիկը, մտածեցի, ինչպես որ հանելուկային ձևով հայտնվեց, երևի նույն ձևով էլ անհետանա։ Բայց, իհարկե, իրեն բան չասացի։ Երբ արդեն հեռանում էի, պինդ սեղմեց ձեռքս ու էլի ժպտաց նույն տխուր ժպի-

տով։ Շատ վատ զգացի ինձ, բայց նորից բան չասացի։ Միայն ձեռքով արի, իբրև թե՝ քնիր։ Իսկ հիմա՝ խնդրեմ ... — Արտակն սկսեց թաշկինակով բիթ ու բերանը սրբել. Նա ակնհայտորեն հուզված էր։

Գիտնականը երկար ժամանակ չէր խոսում։ Ըստ երևույթին, մտածում էր Արտակի պատմածի մասին։ Վերջապես-շշնջաց, ասես ինքն իրեն.

— Լավ աղջիկ էր։

— Զվիտի մոտից հեռանայի, այ թե ինչ ... Բայց դե ո՞ւմ մտքով կանցներ։

Անսպասելից դուրս եկավ Քոթոթը, Աշոտն ու Մհերն էլ՝ նրանից։ Ամեն ինչից երևում էր, որ նրանց որոնումներն ապարդյուն են անցել։ Աշոտը մռթռնջել էր, ոնց որ կարկտաբեր ամպ։ Ոչ որ սիրտ չէր անում խախտել լարված լռությունը։

Էլի Քոթոթը ... Նա, իհարկե, գլուխ չէր հանում հոգեբանությունից ու գործ չուներ ինչ-որ ապրումների հետ, ուստի վեր թռավ տեղից ու սկսեց կատաղորեն հաչել ուղղակի բթի առաջ տզտզացող



ճանճի վրա։ Մհերը գրկեց շան վիզը և աշխատում էր հանգստացնել նրան։

— Ը-ը-ը՜, քեզ էլ ու քո շանն էլ,— մրթմրթաց Աշոտը։ Ապա դարձավ Տիգրանին.— Հիմա ի՞նչ պիտի անենք։

— Կշարունակենք մեր ճանապարհը։

— Իսկ աղջի՞կը...

— Աղջիկն ի՞նչ։

— Կարծում էի քեզ կանհանգստացնի նրա ճակատագիրը։

— Նա հիմա տանն է, իր տատիկի կողքին։

Աշոտը զարմանքով նայեց Գիտնականին։ Այնպիսի համոզվածությամբ է խոսում, ասես հաստատ գիտի։ Մինչդեռ Տիգրանը խորամանկ ժպիտով դարձավ Արտակին.

— Այն ի՞նչ թուղթ է այնտեղ։

Իսկապես, հաճարենու բնին քորոցով մի թերթիկ էր ամրացրած։

Արտակն արագ ցած բերեց ու անհամբերությամբ կարդաց.

«Տղաներ.

Ափսոս, պետք է բաժանվեմ ձեզանից ու վերադառնամ տատիկիս մոտ։ Նա մեն-մենակ է և բացի ինձանից ոչ որ չունի։ Բայց կարծում եմ ճանապարհը հեշտությամբ կգտնեք ու չեք մոլորվի։ Այդպես չէ՞։ Ցտեսություն։

Դորա»։

— Գնացինք,— ասաց Տիգրանը։

— Դեպի ո՞ւր,— հարցրեց Աշոտը։

— Դեպի Թոքիլստանի մայրաքաղաք Թոքիլ։

— Թոքիլ, Թոքիլ, Թոքիլստան ... Իսկ ես կարծում եմ՝ դեպի տուն։ Այդ աղջիկը պարզապես մատների վրա է խաղացնում մեզ։ Նախ, նրա համար փոխեցինք մեր ուղերթը, իսկ այժմ՝ համեցեք, ինքը չկա։ Եվ ինչո՞ւ պիտի կապվեինք այդ անկայուն արարածի հետ։ Զլսեցիք ինձ, և ահա, խնդրեմ ...

— Մի՛ փնթփնթա։ Վերջիվերջո ի՞նչ է պատահել։ Եթե կուզես, այդ աղջիկը մեզ պետք էր միայն Երևանում ու տիեզերանավի մեջ. ինչ որ պատմելու էր՝ պատմեց։ Ուրիշ ի՞նչ։ Այժմ նա նույնիսկ կարող էր խանգարել. «Վա՜յ, հոգնեցի, վա՜յ, սոված եմ, վա՜յ, ծարավ եմ, վա՜յ, մեջքս, վա՜յ, փորս»։ Քնքուշ արարած չի՞։ Ավելի լավ է նստի իր տատիկի մոտ։

Աշոտը մռայլվեց, չնայած սրտի խորքում համամիտ էր Գիտնականին։ «Խելոք է այս ակնոցավոր դմբոն»։

Հացից հետո քարտեզը փռեցին խոտերի վրա, և Տիգրանն սկսեց իր հաշվումները։

— Գնում ենք դեպի արևմուտք։ Եթե բան չպատահի, վաղը Թոքիլում կլինենք։

Ամեն ինչ արագ հավաքեցին ու ճամփա ընկան։ Քոթոթը ուղեցույցի դեր էր կատարում՝ վազում էր առջևից։

(Շարունակելի)



## ՍԱՏԱՆԱՅԻ ՃՈՒՏԸ

*ՄԱՐԻԱ ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ*

Հեռվից հյուր էր մեզ եկել
Մի նավաստի լավ պապիկ
Ու նվեր էր նա բերել
Փոքրիկ-փոքրիկ մի կապիկ:

Բազմում էր այդ նստիկը
Սեղանի շուրջ, պատի մոտ,
Հանգիստ թերթում էր գիրքը,
Հետո էլ ծխում ծխախոտ։

Հագնում էր նա մայրիկի
Կոշիկները և խաղում,
Իսկ ես ու իմ քույրիկը
Նայում էինք, ծիծաղում,

Մի անգամ մեր բաղնիքի
Ծորակը նա դուրս հանեց,
Որի համար տատիկը
«Սատանի ճուտ» անվանեց.

Մի օր էլ մենք հայրիկի
Գլխարկն էինք կորցրել.
Դու մի ասի՝ նստիկն իր
Ետևում է թաքցրել։

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ԴԵՐՁԱԿՆ ՈՒ ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆԸ

*Հոթենթոտական հեքիաթ։ Հարավ-արևմտյան Աֆրիկա։*

Ահա և հեքիաթը: Եկել է, մեր կողքին է, այստեղ է, սկսվում է... Դե հիմա լսեցեք...

Մի գյուղ կար: Բոլոր գյուղերի նման մի գյուղ: Այդ գյուղում մարդիկ էին ապրում: Ապրում էր Դերձակը, ապրում էր Մուկը, ապրում էր Կատուն, ապրում էր Շունը, ապրում էր Փայտը, ապրում էր Կրակը, ապրում էր Ջուրը, ապրում էր Փիղը, ապրում էր Մրջյունը: Ով ապրում էր այդ գյուղում, մի մտածմունք ուներ. որտեղի՞ց ուտելու բան ճարել, ինչպե՞ս կշտանալ:

Եվ մի անգամ... Օ՜, մի անգամ... Լսեցեք, մի անգամ Մուկը կրծեց Դերձակի հագուստը:

Էլ ի՞նչ էր մնում անելու: Նա ուտելիք փնտրելով բոլորովին հալից ընկել էր: Վազվզեց Դերձակի խրճիթի լայնքով ու երկայնքով, ոչ մի անկյուն, ոչ մի ծակուծուկ բաց չթողեց: Բոլո՜ր, բոլո՜ր տեղերում նա խոթեց իր սրածայր դունչը՝ պուտուկների մեջ, սրվակների մեջ: Եվ ոչ մի տեղ ոչինչ չգտավ:

Ստիպված կրծոտեց հագուստը: Խե՜ղճ Մուկ: Խե՜ղճ Դերձակ: Դերձակ, ա՜խ, անբախտ Դերձակ: Մուկը քրքրել էր նրա հագուստը:

Դերձակն իրեն գցեց դատավորի մոտ: Իսկ դատավորը Պավիանն էր[1]: Նա հաստամարմին էր, ճարպակալած: Պավիանը շա՜տ-շա՜տ զբաղված էր... ամբողջ օրը քնում էր:

Այո, այդ գյուղում ամեն մեկը զբաղված էր իր գործով՝ Մուկը փշրանքներ էր փնտրում, Դերձակը կարում էր, Գյուղացին բրիչով փորում էր հողը, իսկ Պավիան-դատավորը քնում էր:

Նա ոչ չար էր, ոչ էլ բարի: Նա հաստամարմին էր, և դրանից էր, որ քունը անվերջ տանում էր: Իսկ մարդիկ խանգարում էին նրան: Նրանք գալիս էին իրենց հոգսերով, գործերով. հարցնում էին, պահանջում, խնդրում, գոռում, վիճում, և նա պետք է սթափվեր, լսեր նրանց, դատեր, իսկ ինքը այնքա՜ն քնել էր ուզում: Չէ՞ որ շատ հաստափորն էր ու շատ ճարպակալած:

Հիմա էլ եկել է այդ Դերձակը:

Դերձակը արթնացրեց նրան և չսպասելով, որ Պավիանը լրիվ արթնանա, աչքերը տրորի ու լսի իրեն, սկսեց խոսել և խոսեց, ա՛յ, այսպես.

— Պավիան, լսի՛ր, թե ինչ է կատարվում այս աշխարհում: Լսի՛ր և իմացիր, թե ինչու ես եկա քեզ արթնացնելու, քե՛զ, մեծագույն դատավորիդ: Լսիր ու տե՛ս, դու միայն տե՛ս, արդյո՞ք կհավատաս քո աչքերին, հագուստս ամբողջովին ծակծկված է: Օ՜, Պավիան, մուկն

[1] Պավիան — շնանման կապիկ։



Թաքուն մտնում պահարան,
Շաքար, կոնֆետ էր ուտում.
Բայց նրա տեղ տատիկը
Գալիս, մեզ էր նախատում։

Փնտրում էինք մենք նրան
Սեղանի ու թախտի տակ,
Իսկ այդ նստիկ սատանան
Բակում խաղում էր գնդակ..

Էլ ճար չկար... Մի օր երբ
Գազանանոց գնացինք,
Այդ «Սատանի ճուտին» մենք
Այնտեղ նվեր տվեցինք։

*Թարգմ. ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԸ*

է այդպես քրքրել: Ախր անցքերից բացի ոչինչ չի մնացել: Լույսը խավարեց ինձ համար: Ես ոչինչ չեմ տեսնում. ո՛չ աստղերը, ո՛չ արևը և ո՛չ էլ գետինը: Ամենուր միայն անցքեր են: Եվ այս բոլորը Մկան գործն է, ուրիշ ո՛չ ոքի: Իսկ այդ Մուկը պնդում է, որ իբր դա ճիշտ չէ: Նա մեղադրում է Կատվին, իսկ Կատուն ասում է, որ այդ գործում մեղավոր է Շունը: Շունը գցում է Փայտի վրա: «Միայն Փա՛յտը կարող է ծակել, ճղել, գզգզել հագուստը»,— գոռում է Շունը: Իսկ Փայտը ժխտում է իր հանցանքը. «Կրակը, միայն Կրակն է կերել, այրել և այդպիսով անցքեր բաց արել»: Բայց Կրակն էլ ոչինչ լսել չի ուզում: «Ո՛չ, ո՛չ և ո՛չ,— պնդում է նա,— դա Ջուրն է, նա է ամեն ինչում մեղավոր»: Իսկ Ջուրը ձևացնում է, իբր, ինքը ոչ մի տեղեկություն չունի այդ պատմությունից, բայց այնուամենայնիվ մատնում է Փղին, որ, իբր, մեղավորը Փիղն է: Դու միայն լսիր, Պավիան, մեծագույն դատավոր: Ջուրը մեղադրում է Փղին: Դե՛, իհարկե, հասկանալի է, չէ՞ որ Փիղը խմում է այդ ջրից ամեն օր, այն էլ մեծ քանակությամբ: Դրա համար էլ Ջուրը նրա դեմ ոխ է պահում: Իսկ Փի՞ղը: Փիղը նայելով անցքերին կատաղում է և ամեն ինչում մեղադրում մրջյունին: Չէ՞ որ մրջյունը անպատիժ վազվզում է նրա ոտքերի վրայով, խտուտ է տալիս, կրծոտում է կաշին: «Տրրու-ո՜ւ, դա նա է, նա՛, նա՛, մրջյունն է կրծոտել հագուստը»,— ձայնը գլուխն է գցում Փիղը: Իսկ Մրջյունը բարկությունից կարմիր կտրած վազում է և աղաղակում, որ ինքը մեղավոր չէ ու խցկվում է մի տեղից մյուսը, անհանգստացնում բոլորին, մեղադրում: Այնուամենայնիվ բոլորն էլ հրաժարվում են, հայհոյում, գոռգոռում և այնպիսի աղմուկ-աղաղակ է բարձրացել, որ արդեն ես ինքս ոչինչ չեմ հասկանում, չգիտեմ ումից բռնագանձեմ հասցված վնասի արժեքը: Իսկ ես հիմա բոլորովին սնանկացած եմ... Օ՜, Պավիան, բա՛ց արա աչքերդ...

Ճիշտն ասած, Դերձակը շատ աղքատ էր: Ուներ-չուներ՝ մի բարձրաճաասակ ու նիհար, ձողանման կինն էր, որից վախենում էր, հետո՝ տունը լիքը երեխաներ՝ տղաներ ու աղջիկներ: Դրանց ավելացրած ժանտ ու դաժան մի պառավ, որը մտել էր նրա խրճիթը և ոչ մի



Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ










կերպ դուրս չէր գալիս: Այդ պառավը ոչ Դերձակի տատիկն էր և ոչ էլ կոքանչը: Նրան ոչ ոք չէր կանչել և, ահա, եկել ու տեղավորվել էր այնպես, որ կարծես իր տանը լիներ, կարծես ծնվել էր այստեղ: Անիծվածը տանջում էր և՛ Դերձակին, և՛ երեխաներին, և՛ նրա կնոջը, որից Դերձակը վախենում էր: Պառավի ատամները երկար էին ու դեղին: Նրա բերանը միականջից մյուսն էր հասնում: Ահա այդպիսին էր այդ անկոչը: Իսկ մեջքի ողերը դանակի պես սուր էին: Եվ այդ պառավը հենց ինքը՝ կարիքն էր:

Կարիքը իշխանել էր Դերձակի մոտ ու տնօրինություն էր անում: Ինչքան աշխատում էր խեղճ Դերձակը, պառավը ամբողջն ուտում էր: Դե՛ տեսեք, թե ինչպես էր տնօրինում այդ անամոթն ու անխիղճը: Դդումի սրվակները և կճուճները միանգամից էր դատարկում, երեխաներին ծեծում, կնոջը հայհոյում, բռնում էր իր՝ Դերձակի կոկորդից այնպես, որ խեղճ Դերձակը չգիտեր ինչից սկսեր: Հակառակի նման էլ Մուկը կրծեց հագուստը: Այն էլ պետք է ասել, որ հագուստը իրենը չէր, այլ՝ պատվիրատուինը:

Խեղճ Դերձակը բոլորովին կորցրեց գլուխը: Դրա համար էլ եկավ դատավորի մոտ և արթնացրեց նրան.

— Օ՛, Պավիան, բա՛ց արա աչքերդ և նայիր. ծակոտիներ են, ամենուր անցքեր:

Պավիանն արթնացավ և կիսաքուն սկսեց լսել Դերձակին:

Ա՜խ, որքա՜ն կուզենար նորից քնել, մինչև իսկ շրթունքները չպպացրեց, ծանր շնչեց, ֆսսացրեց, բայց այնուամենայնիվ հրամայեց կանչել բոլոր նրանց, ովքեր խառնված էին գործին:

Ահա հավաքվեցին բոլորը, և սկսվեց:

Մուկը մեղադրեց Կատվին, Կատուն ցույց տվեց Շանը, Շունը հաչեց Փայտի վրա, Փայտը թխթխկացրեց Կրակին, Կրակը ցույց տվեց Ջրին, Ջուրը ամեն ինչ շուռ տվեց Փղի վրա, Փիղը՝ Մրջյունի, իսկ Մրջյունը ներկայացավ բարկությունից կարմրած ու կայրացած, վազվզեց ետ ու առաջ, վեր ու վար, թափահարեց ձեռքերը, ճգնելով հավատացնել իր անմեղ լինելը: Բոլորը խոսում էին, աղմկում, գոռում, աղաղակում և այնպիսի աղմուկ-աղաղակ էր բարձրացել և այնպիսի խառնաշփոթություն էր ստեղծվել, որ Պավիանը քիչ էր մնում խելագարվեր:

Սա արդեն ուզում էր բոլորին դուրս անել և նորից քնել, բայց Դերձակը նրան հիշեցնելով դատավորի իր պարտքը, ամբողջ ուժով գոռաց.

— Օ՛, Պավիան, բա՛ց արա աչքերդ և նայիր. ոչինչ չի մնացել, միայն ծակոտիներ են:

Պավիանը համբերությունից դուրս եկավ: Վերջ ի վերջո, նրանց հաջողվեց դատավորին արթնացնել: Դրանք բոլորը իրեն ձանձրացրել են: Ա՜խ, ինչպիսի բարդ գործեր է քննում: Իսկ քունը տանում է... Դե, ի՞նչ է դրանց հարկավոր: Իսկապես ասած, նրանք կարող էին իրեն հանգիստ թողնել և իրենք կարգավորեին իրենց գործերը: Դե, ինչպե՞ս չդատի նրանց: Ուրիշ կերպ իրեն դատավոր չեն համարի: Եվ Պավիանը ուղղվեց տեղում՝ ինքնագոհ, հաղթանդամ, կուշտ կերած:

Հենց այդտեղ բոլորը լռեցին:

Պավիանը շոյելով իր ճարպոտ կրծքի թավ բուրդը, երկար չմտածելով, հայտարարեց.

— Ես՝ Պավիանս, բոլոր գազանների, թռչունների և մարդկանց գերագույն դատավորս, հրամայում եմ ձեզ՝ հնազանդեցրե՛ք ինքներդ ձեզ:

Կատուն թող պատառոտի Մկանը,
Շունը՝ Կատվին,
Փայտը հարվածի Շանը,
Կրակը վառի Փայտին,
Ջուրը հանգցնի կրակը,
Փիղը ջուր խմի,
Մրջյունը ուտի Փղին
Եվ տրաքվի:

Իսկ հիմա հեռացե՛ք: Ես ամեն ինչ ասացի:

Եվ քունը հաղթեց Պավիանին: Եվ Պավիանը քնեց:

Այդ ժամանակից ի վեր նրանք բոլորը մեկը մյուսին չեն կարողանում տանել: Հանդիպելիս յուրաքանչյուրը ջանում է, ինչպես հրամայել էր Պավիանը, դիմացինին չարիք պատճառել:

Մրջյունը կծում է Փղին,
Փիղը խմում է Ջուրը,
Ջուրը հանգցնում է Կրակը,
Կրակը հարձակվում է Փայտի վրա,
Փայտը հարվածում է Շանը,
Շունը պատառոտում է Կատվին,

Կատուն հարձակվում է Մկան վրա,
Մուկը քրքրում է հագուստը...

Հագո՞ւստը: Սպասեցե՛ք, իսկ Դերձա՞կը:

Այո, իսկապես, ի՞նչ եղավ Դերձակի գործը:

Համբերություն, համբերություն...

Պավիանը նրան ուղղակի մոռացավ: Ահա թե ինչու, մարդը մշտապես քաղց է կցում: Իսկ Պավիա՞նը: Նա «լավ» դատեց, այնպես չէ՞: Կարո՞ղ եք երևակայել, այնպե՛ս քնել էր ուզում, և չալարեց աչքերը բացել, այնուամենայնիվ արթնացավ այդ հաստափոր, ճարպակալած Պավիան-դատավորը:

Իսկ Դերձակը մինչև հիմա էլ սպասում է արդարադատության: Եվ նա քաղցած է: Իսկ դատավորը՝ քնած:

Բայց մարդը հույս ունի, սպասում է: Ինչի՞ է սպասում Մարդը: Նա սպասում է արդարության: Իսկ Պավիա՞նը:

Նա առաջվա պես քնած է, քնում է, քանի դեռ հաստ է ու ճարպոտ և կուշտ: Երբ այդ մեծ դատավորը արթնանում է և տանից դուրս գալիս, չորեքթաթ է վազում: Պարզ է, վախենում է, որ հանկարծ խեղճ Դերձակը իրեն ճանաչի:

Այո՛, այո՛, այդ ժամանակներից Պավիանին տեսնում եմ միայն չորեքթաթ: Այլ կերպ էլ չէր լինի: Անհեթեթ որոշումից հետո, երբ նա, մտածելով իր մասին միայն, թշնամացրեց բոլորին, Պավիանը մարդկանցից վախենալով, այլևս չկարողացավ երկու ոտքի վրա քայլել և իրեն այնպես ուղիղ պահել, ինչպես վայել է դատավորին:

Ահա և ամբողջ հեքիաթը, որ եկավ, այստեղ է, նա սկսվեց և... Ոչ, նա չի վերջացել: Որովհետև Պավիանը նորից է քնել և նրան դեռևս չեն արթնացրել:

Նա քնած է, բայց հիշեցե՛ք. կքնի այնքան ժամանակ, քանի դեռ հաստամարմին է, քանի դեռ կուշտ է, քանի դեռ ճարպակալած է...

Իսկ հեքիա՞թը... չի՛ վերջացել: Բայց և այնպես երբևէ կվերջանա:

Այդ կարծիքին է Դերձակը: Չէ՞, որ նա սպասում է: Դեռևս հույսը չի կտրել:

*Ռուսերենից թարգմ. ՌՈՒԲԵՆ ՌՈՒԲԻՆՅԱՆԸ*





# ԾԻՏԸ

*ԱՇՈՏ ԳՐԱՇԻ*

*(ժողովրդական)*

Եվ հիվանդացավ մեր առյուծ արքան,
Կենդանիները՝ բոլորը եկան
Նրան տեսնելու,
Մխիթարական խոսքեր ասելու:
Ծիտիկը միայն
Չեկավ տեսության:
— Է, ես մեծ եմ, քան
Մեր առյուծ արքան,
Ավելի զորեղ,
Քան առյուծն ահեղ:—
Բայց հետո զղջաց ծիտը անամոթ,
Վեր կացավ, գնաց թագավորի մոտ:
— Ծիտիկ, եկ շիտակ պատասխանիր ինձ,
Դու ասել ես, թե հզո՞ր ես ինձնից:
— Երկինքը վկա,
Ասել եմ, իրավ, արքայից արքա,
Բայց ես գիտեի, որ ինձ կներես,
Քանզի դու հզոր և իմաստուն ես:
Քո բաներերը երբ տունս եկան,
Տեսան աչքերով իրենց սեփական,
Որ նստած էին հյուրերս ինձ մոտ,
Ուստի դուրս տվի բաներ պարծենկոտ:



*Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ*

# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՊԵՆԴԻԱՐՅԱՆԻ ՄԱՍԻՆ



ՄԱՐԻՆԱ ՍՊԵՆԴԻԱՐՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԱՄԱՌԱՅԻՆ ԱՐՁԱԿՈՒՐԴՆԵՐԸ

Դեռ վաղ գարնանից Սաշան ու Լյոնյան երազում էին ամառային արձակուրդների մասին, և դա նրանց հանգիստ չէր տալիս:

Ահա և ցանկալի օրը: Պարտեզի դռնակին է մոտենում կառքը, և Լյոնյան երջանկությունից թրթռացող սրտով նստում է կառապանի կողքին: Հետո տանից դուրս է գալիս հայրը, ապա՝ Սաշան: Կառքը շարժվում է տեղից: Երկու կողմերից ձգվում են Սիմֆերոպոլի այգիները... Բայց շուտով սկսվում է տափաստանը: Անտանելի շոգ է: Գետինը տժժում է, կանաչը թոշնել է, սակայն օդը հագեցած է կորթինի և օշինդրի անուշ բուրմունքով:

Երևում է եղեգնուտը: Լսվում է գորտերի կռկռոցը: Ճահճից այն կողմ կապտին է տալիս ծովը: Մի անգամ հայրը այդտեղ տեսել էր սև կարապ, որն իր համար լող էր տալիս եղեգների արանքում: Այժմ Սաշան մինչև գոտկատեղը մարմինը դուրս է գցել կառքից՝ թե ուր որ է ինքն էլ կտեսնի սև կարապին:

Վերջապես մոտենում են Արմյանսկին: Հեռվից երևում են ռուսական և հայկական եկեղեցիների գմբեթները: Թվում է, թե դրանք երկու քայլի վրա են: Բայց դա միայն թվում է: Արդեն իջնում է երեկոն, իսկ իրենք դեռ գնում են, հա գնում... Թե երբ են տեղ հասնում, Սաշան չի նկատում: Հայրը կառքից դուրս է բերում քնատ Սաշային:

Արմյանսկում կյանքը բոլորովին այլ էր, քան Սիմֆերոպոլում: Այստեղ օրն սկսվում էր գրեթե լուսադեմից: Հազիվ էր սկսում լուսանալ, երբ ամբողջ տնով մեկ լսվում էր տանտիրուհու բարձր քչփչոցը: Ապա չխչխկում էին հավանգները, կնգկնգում էին թավաները, և տանտիրուհու քչփչոցը վերածվում էր կցտրուկ բացականչությունների:

Առավոտ շուտ հյուրերին տալիս էին խորոված, չեբուրեք (ոչխարի մսով կարկանդակ), տապակած թռչուն... Անհնար էր հրաժարվել: Ժանեկավոր շալի մեջ փաթաթված տանտիրուհին՝ Ուստենգան, լիք-լիք լցնում էր ափսեները և մեղրածոր ժպիտով ասում.

— Անուշ արեք, խնդրեմ, ի՞նչ է, ձեզ դուր չի գալի՞ս:

Ցերեկը շոգ է լինում: Մինչև կոճերը փոշու մեջ կորած՝ փողոցներում թրև են գալիս երեխաները: Դեռևս ժամը հինգից, երբ իրենց ստվերներն են սկըսում գցել միհարկանի սպիտակ տնակները, բնակիչները դուրս են գալիս փողոց և պինվելով արևածաղկի սերմերով, տեղավորվում են նստարաններին ու սկսում սովորական դարձած զրույցը՝ դեսից-դենից:

Աֆանասի Ավկսենտևիչ Սպենդիարյանի ժամանումը մի այնպիսի իրադարձություն էր, որ ամբողջ քաղաքին էր զբաղեցնում: Այսօր մեծահարուստ հյուրի պատվին Ուստենգայի մոտ ճոխ երեկույթ կա: Ընթրիքից հետո վարձու երաժիշտները նվագում են պարեղանակներ: Սկսում են կադրիլով: Առաջին կադրիլին Աֆանասի Ավկսենտևիչը, իհարկե, հրավիրում է իր ազգականուհուն՝ Ուստենգային... Ապա ծայր են առնում տեղական պարերը: «Ղայթարմա» պարում են բոլորը, նույնիսկ հորեղբայր Ստեփանի ճարպակալած գունդուկլոր կինը: Նրա պարը անսահման զվարճություն է պատճառում Սաշային, հատկապես այն ժամանակ, երբ պարի մեջ է մտնում նաև հորեղբայր Ստեփանը:

Բայց հյուրերը նորից թաղվում են բազկաթոռների մեջ, և նրանց մատուցում են քաղցրավենիք ու գինի: Լեզուներն արդեն փաթ են ընկնում: Խոսակցությունն այն մասին է, թե ինչպես պիտի «նայել» ձիերին: Եվ այդ խոսակցությունները գնալով ավելի ու ավելի ձանձրալի են դառնում: Առանձին անկյուններից արդեն լսվում են խռմփոցներ: Բազմոցի վրա մի քիչ ննջելուց հետո Սաշան թաղվում է խորը քնի մեջ: Բայց մի բարձր ձայն հանկարծ նրան ստիպում է արթնանալ: Մազերը խռիվ և ձեռքերը տարածած՝ հորեղբայր Ստեփանը երգում է հայկական մի երգ.

---

Սկիզբը՝ նախորդ համարում:

— Մեկնից շատ առաջ կար մի թագավոր...

Հավանաբար այդ երգը նրան ինչ-որ տխուր բաներ էր հիշեցնում, որովհետև երգը չավարտած, նա սկսում էր հեծկլտալ:

— Մեկնից շատ առաջ կար մի թագավոր,
Հոգով դեռ արի, գլխով ալևոր...

Իսկույն շարունակում են հյուրերը և նույնպես սկսում հեծկլտալ՝ վշտահար օրորելով գլուխները:

Իսկ առավոտյան Սաշան ու Լյոնյան կառք են նստում և ուղիղ դեպի տափաստան: Միայն թե հիմա կանաչն ավելի փարթամ է, և ամենուր կարմրին են տալիս դաշտային կակաչները: Հեռվում օձի նման գալարվելով հոսում է Դնեպրը: Լյոնյան ցնցում է սանձերը:

— Է՜յ, սիրելիներս, շտապեք...,

Ձիերը թափահարում են գլուխները և, կարծես հասկանալով, փնչացնում: Առջևում ջուր կա: Միայն թե շուտ տեղ հասնեն, որպեսզի գլխիվայր թռչեն ջրի մեջ:

Արդեն լսվում է գետի աղմուկը: Գալիս է թաց գերանների ու կուպրի հոտ... Արևը մտել է ամպի տակ: Ջրի երեսը պատած է վարդագույն ցոլքերով: Լյոնյան ու Սաշան սուզվում են ուղիղ ցոլքերի մեջ և լող տալիս նրանց արանքում՝ ձեռքերով ճողփելով ջուրը:

Կախովկա ասելով, տղաներն ամենից առաջ հասկանում են Դնեպր: Առավոտ շուտ, արթնանալուն պես նրանք վազում են դեպի գետը: Այգու ճյուղատարած ծառերի ստվերում կատարվող պարապմունքներից ու ընթերցանությունից հետո, նորից վազ են տալիս դեպի սառնորակ ջուրը: Իսկ իրիկնադեմին, երբ արևը լուսավորում է կողքից, նրանք թռչում են մակույկի մեջ և թիավարում հոսանքն ի վար: Ահա և նավամատույցը, որտեղից լաստառաքում են անտառանյութը: Հայրը նրանց չի նկատում: Հեքիաթային դյուցազնի բարձրագոչ ձայնով նա ղեկավարում է ամբողջ աշխատանքը: Թևերը քշտած՝ լաստառաքողների հետ նա կպել է մի վիթխարի կոճղի:

— Մե՛կ, երկո՛ւ, երե՜ք...

Կոճղը ընկնում է ջուրը՝ առաջացնելով ջրացայտերի մի ամբողջ շատրվան: Հայրը ծիծաղում է, թափ տալիս շորերը, ու նորից լսվում է նրա կարկանդեցնող ձայնը, որը խլացնում է սղոցող բանվորների երգն ու սղոցների միալար խկխկոցը:

Ափի երկայնքով փռված են ձըկնորսների խրճիթներն ու բոստանների կանաչ կղպյակները, որտեղից գալիս են պոմիդորի թփուտների հոտն ու գեղջուկների երգը...

Իսկ կիրակի օրը գնում են տոնավաճառ: Ինչե՜ր ասես, որ չկան տոնավաճառում: Սիրտդ ցավից ճմլվում է, երբ տեսնում ես տոնավաճառ եկած մշակներին ու ծաղրածուներին... Ծաղրածուները կանգնած են փայտե տիկնիկների, կովկասյան չախկալների և ֆրանսիական գայլեր.ի կողքին: Մարդ ուզում է շատ-շատ փող տալ և ազատ արձակել խեղճ կենդանիներին: Թող իրենց տները գնան նաև հալից ընկած մըշակներն ու ներկ քսված ծաղրածուները:

Սաշան հոգնած ու տխուր շրջում է բուրդ և խոտ



բարձած սայլերի, խմորեղենով ու ձեռքով պատրաստած խաղալիքներով կարդարված խանութների մոտերքում: Հայրը մտել է պանդոկը, խմում է բեսարաբական գինի և մորուքավոր ցմփորների հետ քննարկում միլիոնների գործարքներ: Լյոնյան, որ երկրպագու է ամեն մի կվարձության, խեղկատականոցից դուրս չի գալիս: Իսկ Սաշան շրջում է ու ականջ դնում կույր երաժիշտների թախծոտ երգերին, որ գալիս են տոնավաճառի ամենահեռավոր ծայրից:

Վերջապես նա գտնում է նրանց տեղը: Դարբնոցի մոտ հերթի կանգնած սայլակների հետևում, շուռ տված կամբյուղների վրա նստած են կույրերը: Մարդիկ այստեղ մի տեսակ ապատ են. ո՛չ վաճառում են, ո՛չ գնում... Փորի վրա պառկել են կույր երաժիշտների ոտքերի մոտ և երաժշտություն են լսում:

## ԳՐԱԿԱՆ-ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽՄԲԱԿԸ

Փողոցով քայլում է շատ լրջադեմ մի տղա: Նրա գորշ աչքերը փոքր-ինչ կկոցած են, շրթունքները՝ ամուր սեղմված: Երևում է՝ միտքը ինչ-որ բանով է տարված: Արագ քայլելուց մեջքի պայուսակը թռչկոտում է:

— Սա՛շա,—գոռում է մեկը շտապող գիմնազիստի հետևից:—Արի գնանք կրոսայգի: Կեսօրից հետո կըգանք:

Իսկ տղան նույնիսկ շուռ էլ չի գալիս: Զվարթ դեմքը բարձրացնելով դեպի երկինքը, նա ինչ-որ բան է դնդնում:

Սաշան պրդեն տանն է, գրասեղանի մոտ: Չէ՞ որ գրական-երաժշտական խմբակը այսօր պարապմունքի է հավաքվելու նրանց տանը: Այդտեղ կլինեն թե «բանաստեղծներ» և թե «երաժիշտներ»:

Երեկո է: Երգչախմբի անդամներին բաժանված են պարտիաները: Վերնագիրն է «Երկու հսկաները» և կողքին փոքր տառերով ստորագրված է. «Ա. Սպենդիարով»: Սերյոժա Բրունսը նստում է ռոյալի առաջ: Բոլորը երգում են: Երգչախմբի անդամներին թվում է, թե իրենք բավական լավ ու ներդաշնակ են երգում, բայց Սաշան միշտ էլ գտնում է, որ խումբը վատ է երգում:

— Նորի՛ց, մի անգամ էլ,—պահանջում է նա, ապա մոտենում ռոյալին և մատներով հարվածում ստեղներին:

Սաշայի հորինած «Ավազակների երգը», որը Շիլլերի ավազակներով հրապուրվելու արդյունքն էր, երգչախումբը կատարում է բավականին հաջող: Նախերգն սկսում է Մուրզանը, ապա որոտում է երգչախումբը: Դահիճի կենտրոնում հայտնվում են բանաստեղծները: Սերյոժա Բրունսը չռում է ոտքերը, գլուխը բարձրացնում վեր և արտասանում իր գրած բալլադը:

Սաշան դադարեցնում է նվագը, տարվում խոհերով, բայց ծափահարությունների որոտը նրան ստիպում է սթափվել: Հատկապես աչքի է ընկնում օրիորդ Բյուրնանը, որը ռուսերեն ոչ մի բառ չի հասկանում: Նա գոռում է «օ՜յ լա-լա՜» և ոգևորված ծափ տալիս: Կարպ պապիկը ոչինչ չի լսում. գլուխը բազկաթոռի թիկնակին դրած՝ կամաց շվացնում է քնի մեջ: Հայրը նկատելի գոհունակությամբ շփում է երկճյուղանի թավ մորուքը:

— Ես միշտ ասում էի, որ Սաշան ամբողջովին ինձ է քաշել,—դիմում է նա ծրանությամբ ժպտացող Նատալյա Կարպովնային:— Նայի՛ր, թե ինչ համառ բնավորություն ունի. ինչ գործի որ կպավ՝ անպայման գլուխ կբերի:

## «ԿԱՐՄԵՆ»

Երաժշտություն լսելու պահանջը Սաշայի մոտ օրեցօր ավելի ու ավելի էր մեծանում: Իսկ Սիմֆերոպոլում երաժշտասերների միակ մխիթարությունը կինվորական նվագախումբն էր: Եվ Սաշան երաժշտություն լսելու համար հաճախ էր թողնում գրքերն ու ջութակը: Գիմնազիստի մեծ գլխարկը մինչև ականջները քաշած՝ նա շարունակ կանգնած էր լինում այն բեմահարթակի մոտ, որտեղ հանդես էր գալիս նվագախումբը:

Սաշայի նոր ուսուցիչ պարոն Պոլը նրա ջութակային նվագացանկում ավելացրել էր դասական ստեղծագործություններ: Գրական-երաժշտական երեկոներին գիմնազիայի նվագախումբը, որտեղ Սաշան նվագում էր առաջին ջութակը, կատարում էր հատվածներ Գլինկայի օպերաներից: Արդեն պատկերացում էր կազմվում իսկական երաժշտության մասին: Մի կողմից էլ Լյոնյան, որ ընդունվել էր Մոսկվայի համալսարանը, նրան հանգիստ չէր տալիս՝ պատմելով մոսկովյան սիմֆոնիկ համերգների մասին:

Սաշան երազում էր այն օրը, երբ կավարտեր գիմնազիան և կգնար Մոսկվա, Լյոնյայի մոտ:

Եկավ 1890՝ թվականի գարունը: Վերջացան ավարտական քննությունները: Գիմնազիստական գլխարկներից պոկելով հովարները, շրջանավարտները թրև էին գալիս փողոցներում՝ ճաշակելով կարճատև հանգստի այն քաղցրությունը, երբ մի բան վերջանում է, իսկ մյուսը դեռ չի սկսված: Եվ ինչքա՜ն մեծ հույսեր կան՝ լուսավոր, ծիածանային:

Գիմնազիան ոսկե մ՜դալով ավարտելու համար, որպես պարգև, Սաշային հայրը իր հետ տարավ Վիեննա: Եվ ահա ձեռքերը կրծքին ծալած՝ նա կանգնած է Մոցարտի հուշարձանի առաջ: Ապա նրա ուշադրությունն է գրավում մարմարակերտ Գյոթեն:

«Իխ վայս նիխթ վաս զոլ էս բեդոյթեն
Դաս իխ զո թրաուրիգ բին...»



Շնչում է Սաշան՝ աչքերը չկտրելով սքանչելի բանաստեղծի դեմքից:

— Սաշա,—սթափեցնում է նրան կառքի մեջ նըստած մորուքավոր պարոնի բարկացկոտ ձայնը:

Կառքի անիվները դանդաղ գլորվում են Վիեննայի փողոցներով:

— Այստեղ է ապրել Լյուդվիգ վան Բեթհովենը,— ասում է կառապանը,—այստեղ է մեռել Ֆրանց Շուբերտը: Այստեղ է «Դոյչհաուս» ռեստորանը, որտեղ մշտապես լինում էր Հայդնը:

Սաշան ասես երազում լինի. Բեթհովեն, Շուբերտ, Հայդն...

— Իսկ Վոլֆգանգ Ամադեյ Մոցարտը այստեղ է հորինել «Ֆիգարոյի ամուսնությունը» օպերան:

Աֆանասի Ավկսենտևիչը շտապում է: Նա սիրախարված է Վիեննայի սրճարաններին և այնտեղ է անցկացնում իր ժամանակի մեծ մասը:

— Մարդիկ գիտեն ապրելու ձևը,— գրեթե ամեն անգամ սուրճը մի կում անելուց հետո նա դիմում է Սաշային:

Բայց Սաշան չի արձագանքում: Նա ագահաբար կլանում է Շտրաուսի վալսերը, որոնք դուրս են ծորում գրամոֆոնի փողից:

Վիեննայի ամբողջ օդը հագեցած է Շտրաուսի երաժշտությամբ: Սաշային նույնիսկ թվում է, թե վիեննացիները քայլում են պարելով:

— Տարամ-տարամ-տարամ-տա-տա՛,— երգում է կաշվե կարճ շալվարով մի պարոն, որի գլխարկին այծյամի պոչ է ամրացված: Ապա նա բռնում է սիրամարգի փետուրով կարդարված մի տիկնոջ ձեռքից և նըրանք «Վիեննական անտառի հեքիաթը» վալսի սքանչելի հնչյունների տակ սահում են մայթին:

Հանդիսավոր հագնված Աֆանասի Ավկսենտևիչն ու Սաշան գնում են Վիեննայի օպերային գլխավոր թատրոնը:

Այսօր «Կարմենն» է: Սաշան հազիվ է կարողանում նկատել ս. Ստեփանի տաճարի կանաչա-բրոնզագույն արտաքինը և թատրոնի առաջին հարկաբաժնի վրա կանգնած սև ձիերը: Նախանվագի հնչյունները գերում են նրան, ու սկսվում է մի նոր բան, նոր երազ...

Նրան թվում է, թե ինքն է ստեղծել այդ հրաշունչ երաժշտությունը, որ այդպես հեշտությամբ ընկալվում ու հիացմունք է առաջ բերում: Եվ ահա երևում է հերոսուհին: Նա իջնում է դեպի բազմությունը, և այդ պահից ի վեր Սաշային թվում է, թե Կարմենի ամեն մի երգը, ամեն մի շարժումը թելադրված է իր սրտից:

Երրորդ գործողության երաժշտությունը լսելիս Սաշան մտածում էր. «Մի՞թե երբևէ ես կլսեմ իմ երաժըշտությունը այսպիսի անթերի կատարմամբ»: Բայց մոմի աղոտ լույսի տակ երևացող Կարմենի դեմքը և «գուշակության» առաջին հնչյունները նրան ստիպում են մոռանալ իր մասին:

Ոչ մի վայրկյան չի թուլանում հրաշունչ երաժըշտությունը: Նրա կրքոտ ռիթմից գլուխ է պտտվում: Արևն արդեն վենիթում է: Երկինքը կապույտ-կապույտ է: Ամբոխը վառ կարմիր ծաղիկներ է մատուցում հաղթող թորեադորին: Վառ կարմիր ծաղիկներ կան նաև Կարմենի ձեռքին:

Բայց ո՞վ է սա. այս սնապզեստը, որ գնում է հոսանքն ի վեր: Խոսեն է, Խոսե՛ն...

Հնչում է ողբերգական սիրո թեման: Գնալով երաժըշտությունը ուժգնանում և հասնում է իր գագաթնակետին...

Տպավորությունը շշմեցուցիչ էր, և այդ տպավորությամբ էլ Սաշան դուրս է գալիս թատրոնից:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝
**Հոկտեմբերիկների համար**

# ՎՏԱՆԳԻ ՄԻ՛ ԵՆԹԱՐԿԵՔ ՁԵՐ ԿՅԱՆՔԸ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹՈՎՄԱՍՅԱՆ*

*Միլիցիայի Երևանի քաղաքային վարչության պետ ավտոտեսչության ագիտացիոն բաժանմունքի պետ, միլիցիայի մայոր*

Սիրելի դպրոցականներ, շատ բան է արվում, որպեսզի փողոցով երթևեկելը լինի ոչ միայն հարմար, այլև անվտանգ:

Անվտանգության ապահովման կարևոր պայմաններից մեկը ձեր անձնական կգուշությունն է: Մի՞թե դժվար է գնալ մինչև «անցում» ցուցիչը, մի քանի վայրկյան սպասել լուսաֆորի կանաչ լույսին կամ երթևեկությունը կարգավորող միլիցիոների ազդանշանին:

Շատ հաճախ լինում են այնպիսի դեպքեր, երբ դպրոցականները իրենց անուշադրության հետևանքով վնասվում են կամ դառնում հաշմանդամ:

12 տարեկան պիոներ Վ—ն երկու օր դպրոց չէր հաճախում վատառողջ լինելու պատճառով, մայրը աշխատանքի գնալուց առաջ ասաց, որ տանից դուրս չգնա, պառկի: Բայց նա մի քանի ժամ անկողնում մնալուց հետո դուրս եկավ բակ և երեխաների հետ սկըսեց «Չլիկ դաստա» խաղալ: Այդ ժամանակ բակ մտավ մաքրման գրասենյակի աղբի ավտոմեքենան: Երբ վարորդը ցանկանում էր ետընթացքով ուղղել մեքենան, Վ—ն ընկավ անիվի տակ: Շենքի բնակիչներն ու բանվորները չէին նկատել, որ Վ—ն մեքենայի տակից ցանկանում էր վերցնել «Չլիկը»:

Կրուպսկայայի անվան դպրոցի առաջին դասարանի աշակերտուհի Անահիտը փողոցը անցնում էր ոչ նախատեսված տեղով և վազքով հայտնվեց «Մոսկվիչ» ավտոմեքենայի առաջ: Վարորդը, անակնկալի գալով, իր հերթին հանդես չբերեց զգուշություն և մեքենայի առջևի մասով մահացու հարված հասցրեց Անահիտին:

Իսկ այս դեպքը պատահեց Շիրակի փողոցում, որը վաղ առավոտից մինչև ուշ երեկո ծանրաբեռնված է տրանսպորտի կանայան տեսակներով: Հարազատների և շրջապատի մարդկանց անուշադրության հետևանքով չորս տարեկան Սուսաննան դուրս է գալիս բակից և փորձում է վազքով կտրել անցնել փողոցը: Նույն պահին արագ ընթացող ինքնաթափ մեքենայի վարորդը նկատելով Սուսաննային, ձեռք է առնում բոլոր հնարավոր միջոցները, բայց քանի որ մեքենան ընթանում էր շատ արագ, դրա համար էլ ոչինչ չօգնեց, որպեսզի փրկվի փոքրիկ Սուսաննայի կյանքը:

Սիրելի դպրոցականներ, որպեսզի վթարները ընդմիշտ վերանան, անհրաժեշտ է իմանալ փողոցային երթևեկության կանոնները: Մի՛ մոռացեք, որ դրանք սովորական կանոններ չեն, այլ՝ անվտանգության կանոններ, որոնց շնորհիվ փրկած կլինեք ձեր կյանքը:


Գլխավոր խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԴԻԴՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Դ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:*

*ՎՖ 06866: Պատվեր՝ 1579: Տպաքանակ՝ 16600: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 28/IX, 1966 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91:*

Գինը՝ 20 կ.

Երթևեկության կանոնները ոչ միայն պետք է գիտենալ, այլև միշտ կիրառել առօրյա կյանքում:

Շատ դպրոցականներ ուշանում են դասից և ժամանակը շահելու նպատակով դիմում են «խիզախության»՝ ընթացքի ժամանակ բարձրանում են տրամվայ կամ ցած թռչում տրանսպորտից: Շատ երեխաներ էլ դասերից հետո փողոցում կազմակերպում են զանազան խաղեր ու տուրուդմփոցներ, երբեմն էլ փողոցը դարձնում են ֆուտբոլի դաշտ:

Հիշեցեք, որ նույնիսկ ամենափորձված վարորդը չի կարող ավտոմեքենան իսկույն կանգնեցնել, եթե անուշադիր անցորդը հայտնըվի նրա առաջ:

Փողոցը անհրաժեշտ է անցնել միայն անցման տեղերից:

Քայլեցեք միայն մայթերով, այն էլ՝ նրա աջ կողմով, իսկ որտեղ մայթեր չկան՝ ճանապարհի ձախ մասով:

Խաչմերուկին մոտենալիս հետևեցեք լուսաֆորի կանաչ ազդանշանին, լավ է մեկ րոպե սպասել լուսաֆորի կանաչ լույսին, քան թե «շտապ օգնության» մեքենային:



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ




## ԲՈԼՈՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ ԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻՆ

*Այս ամսագրերը ձեզ համար են լույս տեսնում, իսկ դուք բաժանորդագրվե՞լ եք 1967 թվականի համար: Շտապեցեք բաժանորդագրվել:*

| | | |
|---|---|---|
| «Պիոներ» | 12 ամիսը՝ | 1 ռ. 20 կ. |
| | 6 ամիսը՝ — | 60 կ. |
| «Ծիծեռնակ» | —12 ամիսը՝ | 1 ռ. 20 կ. |
| | 6 ամիսը — | 60 կ. |



# ՄԵԿ, ԵՐԿՈՒ, ԵՐԵՔ, ՔԱՐԸ ՔԱՐԻՆ ՇԱՐԵՔ

«ՊԻՈՆԵՐԻ» ՀԱՎԵԼՎԱԾ

ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



— Ի՞նչ ես անում, քեռի,— հարցրեց փայտփորիկը՝ տեսնելով ինչ-որ գործով կլանված կուղբին:

— Օ՜, այդ դու ես, նախշուն փայտփորիկ. ուզում եմ ինձ համար մի տնակ սարքել:

— Լա՜վ բան ես մտածել: Իսկ օգնող չե՞ս ուզում:

— Հա՛, հա՛, հա՛,— ծիծաղեց կուղբը.— այդքան պստիկ տեղով դու ի՞նչ կարող ես անել:

— Դու պատ կշարես, ես էլ քարերը կհաշվեմ, չէ՞ որ ես արդեն հաշվել գիտեմ:

— Լավ,— ասաց կուղբը և դրեց առաջին քարը:

— Այս մե՜կ,— ծլվլաց փայտփորիկը և թղթի վրա քաշեց մի գիծ:



Կուղբը վերցրեց սայլակը և գնաց նոր քար բերելու: Այս անգամ նա բերեց մի դեղին քար:

— Երկո՛ւ,—ասաց փայտփորիկը և մատիտով մի գիծ էլ ավելացրեց թղթի վրա:

Կուղբը թեև ուժեղ էր, բայց գլխի ընկավ, որ մենակ չի կարող տուն սարքել: Առանց քարտաշի ու վարպետի ոչ մի պատ չի բարձրանա: Այդ պահին եկավ մի մուկ:




— Մուկի՛կ եղբայր,— կանչեց փայտփորիկը,— օգնի՛ր կուզը քեռուն:

— Լավ,— ասաց մուկը և գետնից վերցրեց մի քար:

— Այս էլ երեք,— լսվեց փայտփորիկի ուրախ ձայնը:

Բայց մուկը քարը հազիվ տեղ հասցըրեց ու, պո՜ւկ, փախավ: Դե, նա որտեղի՞ց ուժ ունենար, չէ՞ որ սպորտով բոլորովին չէր զբաղվել:

3



Քիչ հետո վարպետ կուղբի ականջին հասան մկնային ուրախ ծվծվոցներ: Օգնության էին գալիս երկու աշխույժ մկնիկներ՝ Մստոն ու Ճստոն. երկուսն էլ սպորտ սիրող ու լավ մարզված: Մստոն պատին դրեց չորրորդ քարը:

— Երեքին գումարած մեկ՝ հավասար է չորսի,— ասաց փայտփորիկն ու քաշեց չորրորդ գիծը:

4




Երբ պատին դրվեց հինգերորդ քարը, փայտփորիկը մի գիծ էլ ավելացրեց ու ծլվլաց.

— Ուտելու ժամն է:

Եվ շինարարները նստեցին նախաճաշի:

5



Գնալով շատանում էին վարպետ կուղբի օգնականները: Փայտփորիկը ծառից չէր իջնում: Նա ուշադիր հետևում էր շինարարությանը:

— Հինգին գումարած մեկ՝ հավասար է վեցի:

6



— Այս էլ յո՜թ,— լսվեց նորից փայտփորիկի ձայնը:

Հենց այդ պահին խախտվեց տախտակի հավասարակշռությունը և կուղբը գլխիվայր ներքև գլորվեց:

7



Նորից եռում է աշխատանքը: Կուղբը գոհ է իր փոքրիկ օգնականներից: Երբ նորից լսվեց փայտփորիկի ձայնը և թղթի վրա հայտնվեց ութերորդ գծիկը, Փոստոն սկսեց մկնային մի երգ:

8



Կուղբը գիտեր, որ առանց կտուրի տունը ապահով չի լինի: Միշտ չէ, որ երկինքը կապուտակ է, միշտ չէ, որ արևը ժպտում է: Մռայլ ամպերը անձրև ու քամի են բերում: Եվ վա՜յ այն տանը, որը կտուր չունի: Եվ նա մկներին ասաց, որ մի քար էլ դնեն կտուր կապելու համար.

Եվ ահա Նկոն ու Մկոն բերում են իններորդ քարը:

— Ութին գումարած մեկ՝ հավասար է... հավասար է... հավասար է իննի,— այս անգամ էլ չսխալվեց փայտփորիկը:



Մոտերքում եղեգնուտ կար։ Կուղբը երկու խուրձ դալար եղեգն բերեց կտուրի համար։ Շինարար մկները եղեգնի խրձերով կտուր սարքեցին և վրան մի քար դրին, որ քամին չթռցնի։ Մկներից մի քանիսը, որ այլևս գործ չունեին անելու, շտապեցին տեղավորվել ներսում։ Տեսե՛ք, ամենափոքրիկի գլուխը հազիվ է երևում լուսամուտից։

— Իննին գումարած մեկ՝ հավասար է տասի,— հանդիսավոր կերպով ծլվլաց փայտփորիկը և քաշեց վերջին գիծը։

Լավ է, որ շինարարությունը վերջացավ, թե չէ ի՞նչ պիտի աներ խեղճ փայտփորիկը. ախր նա հաշվել գիտեր մինչև տասը։ Ի՞նչ կա զարմանալու, չէ՞ որ նա շատ է փոքր։



Հրճվանքի մեջ են շինարարները: Պարում են, երգում, նվագում: Բայց ամենից շատ ուրախ է կուղբը: Նա գոհ է, որ ունի այդպիսի լավ հարևաններ, որոնք իրեն մենակ չթողեցին և օգնության հասան:

Գերմաներենից փոխադրեց Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ




Տրվում է անվճար՝ «Պիոների» տասներորդ համարի հետ